Անգլիոյ նախարարները չկրցան անմիջապէս ճշգրիտ պատասխաններ տալ այս հարցումներուն: Իրազեկներ կը հաւատեն թէ Անգլիա կ'ուզէ միջնորդի դեր կատարել, առանց շօշափելի առաջարկ մը ներկայացնելու: Այնպէս որ, մեծ արդիւնք մը չսպասուիր երկու օրուան խօսակցութիւններէն: Պաշտօնական զեկոյցը անշուշտ պիտի ծանուցանէ թէ տեսակցութիւնները շատ սիրալիր եղան եւ սկզբունքով համաձայնութիւն գոյացաւ ...

## Կիներու քուէարկութեան իրաւունքը

»»» · · «««

*Երեքշաբթի օր, Երեսփ. Ժողովին պիտի յանձնուի առաջարկ մը, պահանջելով քուէարկութեան իրաւունք տալ կիներուն, քաղաքապետական ընտրութեանց մէջ:*

*Առենէ մը ի վեր, նորէն կ'արծարծուի կիներու ընտրական իրաւունքի խնդիրը: «Մաթէն» հարցարան մը բացած է, ուր ամէն օր կ'արտայայտուին բազմաթիւ հեղինակաւոր դէմքեր եւ մասնաւորապէս կիներ: Այս խնդիրը կը յուզուի 1840ական թուականներէն ի վեր, առանց գործնական ելքի մը յանգելու, եւ այժմ Ֆրանսուհիները անհամբերութեան նշաններ կը ցուցնեն, յիշելով ուրիշ երկիրներու օրինակը:*

## Զինուորութեան շրջանը պիտի երկարաձգուի՞

—— · ——

*Հակառակ պաշտօնական շրջանակներու լռութեան, իրազեկներ կը պնդեն թէ պատերազմական նախարարը ծրագիր մը պատրաստած է, զինուորութեան շրջանը 15, 18 կամ 24 ամսուան վերածելու համար: Նախարարութիւնը լուրջ մտահոգութեան մատնուած է, նկատելով որ զինուորցուներու բաց մը պիտի ունենայ 1936–1940: Սովորական տարիներու մէջ (1912, 1913, 1914 եւ պատերազմէն վերջը), տարեկան ծնունդներու միջին թիւը եղած է 230,000 (զինուորցու): 1915, 1916, 1917 եւ 1918ի տարեկան միջին թիւը կը տատանի 115,000ի եւ 120,000ի միջեւ: Ուրեմն, յառաջիկայ տարի 115,000 զինուորցու պակաս պիտի գայ: Մայր երկրի բանակին սովորական թիւն է 250,000, որոնց 50,000ը աստղաբաշխի... ապարէզով զինուորական են: Արդ, զինուորական գերագոյն խորհուրդը անբաւական կը սեպէ այս թիւը, երկրին պաշտպանութեան համար եւ անհրաժեշտ կը գտնէ 300,000 հոգի:*

*Մտահոգութիւնը լուրջ է մանաւանդ անոր համար որ, Գերմանիա 460,000 հոգինոց գործօն բանակ մը ունի եւ կրնայ 600 հազարի բարձրացնել վեց ամիսէն:*

*Կամաւոր զինուորութեան փորձն ալ գոհացուցիչ արդիւնք տուած չըլլալով, պատերազմական նախարարութիւնը ուրիշ ելք չի գտներ եթէ ոչ օրինագիծ մը ներկայացնել խորհրդարանին եւ պահանջել որ զինուորութեան շրջանը բարձրացուի 15, 18 կամ 24 ամսուան:*

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

*ՄՈՍԿՈՒԱ – ՊԵՐԼԻՆ ՕԴԱՆԱՒԸ ջախջախուեցաւ Շթէթինի մէջ (Գերմանիա), մշուշի հետեւանքով: Ութ ուղեւորներ, որոնց մէկը կին եւ երեք օդանաւորդներ մեռան ջարդ ու փշուր:*

*ՄԱՐՍԷԼ ՔԱՇԷՆ, Ֆրանսայի համայնավարներուն առաջնորդը, Լոնտոն գնաց անցի օր, երկու նախարարներուն այցելութեան առթիւ: Անգլիական ոստիկանութիւնը չարտօնեց ոտք կոխել եւ «Իւմանիթէ»ի խմբագրապետը ճարահատ վերադարձաւ Փարիզ:*

*ԳՈՐԾԱԶՐԿՈՒԹԵԱՆ մասին հարցապնդումները շարունակուեցան ուրբաթ օր, Երեսփ. Ժողովին մէջ: Այս առթիւ յուզուեցաւ նաեւ Սիթրօէնի գործարաններուն խնդիրը: Քսան հազար բանուորներու վրայ հազիւ 2–3000 հոգի առնուած են, եւ կացութիւնը անորոշ է տակաւին: Ուրիշ երեսփոխաններ պարզեցին գաւառներու մէջ տիրող թշուառութիւնը: Միայն հիւսիսային շրջանին մէջ 60,000 գործազուրկներ կան:*

*ԳՈՐԾԱԶՐԿՈՒԹԵԱՆ շաբաթական տեղեկագիրը յունուար 26-ին նպաստընկալ գործազուրկներու թիւը կը ներկայացնէ 479,005, որոնց 383,904ը կին: Անցեալ շաբթուան թիւն էր 468,242, ուրեմն աւելցած է 10,763: Անցեալ տարի նոյն ժամանակաշրջանին գործազուրկներու թիւն էր 332,266: Ուրեմն, հարիւրին 44 յաւելում:*

## ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Հրազդան, Քրիստափոր *եւ* Ազբիւր Սերոբ *միացեալ խումբերու դասախօսութիւնը տեղի կ'ունենայ վաղը Երկուշաբթի երեկոյ ժամը 8.30ին* 32, Ave. les Gobelins*ի սրահին:*

կը խօսի ընկեր *ՍԱՀԱԿ ՏԵՐ ԹՈՎՄԱՍԵԱՆ, Նիւթ՝* «Հայաստանի վերաշինութեանիրական պատկերը»:

*Ընկերահամակրական դասախօսութիւն Անիէռի Հ.Յ.Դ. «Արամ» ենթակոմիտէին կողմէ, այսօր կիրակի կէսօրէ վերջ ժամը* 2ին 1 Փլաս տը լա Գոմէթ, *Անիէռ.*

կը խօսի՝ ընկ. ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ

*Կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները:*



## ՓՈՐՁԻ ՏԱԿ Է ԵՒ ՄՕՏ ԱՏԵՆԷՆ

ՎԻԷՆԻ Հ. Յ. Դ. ԿՈՄԻՏԷԻ ԿՈՂՄԷ ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՈՒԻ

## Յ. Պարոնեանի ՄԵԾԱՊԱՏԻՒ ՄՈՒՐԱՑԿԱՆՆԵՐԸ



### ՉՐՈՅՑ-ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Ֆր. Կ. Խաչի Շավիլի մասնաճիւղին կողմէ այսօր կիրակի կէս օրէ յետոյ ժամը 4ին, Մատուռ - Մանկապարտէզի սրահին մէջ, կը խօսի՝ Օր. Մ. ՄԵԾԱՏՈՒՐԵԱՆ: Նիւթ՝ *Ծնողքին դերը մանուկներու կամքի դաստիարակութեան մէջ:*

Մուտքը ազատ է բոլորին համար:

### ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ
### ՖԻՐՏՈՒՍԻԻ ՄԱՍԻՆ

Երեքշաբթի, 5 Յունուար, իրիկուան ժամը *8·30ին*, Սօսիէթէ Սավանթի մէջ: Դասախօս Միր ԵԱԴՈՒԼԼ. Նիւթ՝ *«Ֆիրդուսի և իր գործը»* (ռուսերէն):

### Կ'ՈՒԶՈՒԻ

*Կ'ՈՒԶՈՒԻ* 45-50 *տարեկան կին մը տնական աշխատանքներու եւ փոքրիկ մը նայելու համար: Կը տրուի ճաշ, բնակարան եւ ամսական* 100 *ֆրանք:*

*Դիմել՝* Maison Jean, 42 Avenue da la Porte Clichy, Paris (17).

### Վարձու յարկաբաժին

Վարձու են Լա Կարէնի կայարանին դիմացը (9 վայրկեան Սէն Լազարի կայարանէն), ամենաարդիական յարմարութիւններով յարկաբաժիններ մէկ սենեակ խոհանոց եւն. 2000 փր., 2 սենեակ խոհանոց եւն. 4000 փրանք, 3 սենեակ խոհանոց եւն. 5000 փրանք: Առանց *քոնֆոր*ի 2 սենեակ խոհանոց 1600 փր., 3 սենեակ խոհանոց 3000: Մասնաւոր զեղչ Հայերու, որոնք կը ներկայանան «*Յառաջ*»ի ներկայ կտրոնով: Անմախընթաց պատեհութիւն: Դիմել տեղւոյն վրայ

Պ. **Stéphanի, proprietaire**, 63, Rue de Pointe, La Garenne (Seine): Tél. Charlebourg: 23—39.

**Le Gérant: H. STEPHAN**
**Imprimerie A. DER (AGOPIAN)**
**17, Rue Damesme, PARIS (13)**

